չէլ խորհրդային զօրքը եւ քննութիւն կատարել վերջին ձերբակալութեանց մասին : «Մենք հակայեղափոխականներ չենք եւ հաւատարիմ կը մնանք մեր Հոկտեմբեր 23ի ծրագրին : Մենք կը պահանջենք անկախ եւ ընկերվարական Հունգարիա մը որ նկատի առնէ մեր ազգային բաղձանքները : Մենք հակառակ ենք աջակողմեան կամ ձախակողմեան կարգուսարքի մը վերահաստատման » :

× Կառավարութեան ժխտական պատասխանին դէմ բողոքելու համար, բանուորական խորհուրդը որոշեց չկարդալ պաշտօնաթերթը : Իրենց գործունէութեան մասին տեղեկութիւններ պիտի հաղորդեն թռուցիկներով :

× Վիէննա հասած տեղեկութեանց համաձայն, Հունգարիոյ Պորտոս Նահանգը անկախ հանրապետութիւն հռչակած է եւ չի ճանչնար Քատարի կառավարութիւնը : Այս առթիւ բանաձեւ մը քուէարկելով յանձնած են քաղաքին ռուս հրամանատարին :

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԵԳԻՊՏՈՍԻ Ֆրանսացիներու կալուածները ծանրացած ըլլալով, կառավարութիւնը որոշեց խնդրել որ Ազգաժողովը քննիչներ ղրկէ : Գահիրէի զուիցերիական դեսպանատունը յայտնած է արգելարաններէն արձակել շատ մը Ֆրանսացիներ :

ԻՍՐԱՅԷԼԻ կառավարութիւնն ալ կը գանգատի թէ հազարաւոր Հրեաներ «մահացու անձկութեան մը մատնուած են Եգիպտոսի մէջ» : Մասնաւոր յանձնախումբ մը կազմուած է, տեղաւորելու համար արտաքսուած Հրեաները : Հարիւրաւորներ ալ ճամբայ ելած են դէպի Յունաստան, Կիպրոս եւ Մարսէյլ, ինչպէս կը հաղորդէ Իսրայէլի զեկոյցը : Պաշտօնական հալածանք չկայ, բայց մթնոլորտը թունաւորուած է : — Առջի օր Մարսէյլ եւ Օրլի հասան բազմաթիւ Ֆրանսացիներ :

ԱԼԺԵՐԻՈՅ Նետրոմա քաղաքին մէջ երկու լարուած ռումբեր պայթեցան, կործանելով երկու մեծ շէնքեր : Սպաննուեցան 23 հոգի, մեծ մասով Եւրոպացի : Վիրաւորներուն թիւը՝ 13 : Զինուորները դիրք բռնեցին քաղաքին մէջ :

ՉՈՐՍ ԱՆՑՈՐԴՆԵՐ յարձակում կրեցին Սէն Լազարի մէկ փողոցին անկիւնը (Փարիզ), ծանրապէս վիրաւորուելով : Յարձակողը Ալժերիացի մըն էր, որ աջ ձախ կը զարնէր : Դժուարաւ զսպուեցաւ :

ԱԶԳԱԺՈՂՈՎԻՆ տարագիրներու վարչութիւնը 1·815·000 տոլար նպաստ յատկացուց Հունգարիոյ փախստականներուն :

ԼԵՀԱՍՏԱՆԻ գիւղացիները բուռն պայքար կը մղեն հաւաքական հողագործութեան դէմ (կոլխոզ) : Հազարաւորներ հեռացած են արդէն :

ԱԼԺԵՐԻՈՅ մէջ բռնուեցաւ կարաւան մը որ 34 գնդացիր, 87 հրացան եւ մեծ քանակութեամբ ռազմանիւթ կը փոխադրէր : Վերջին ընդհարումներու ընթացքին սպաննուած են 50 ըմբոստներ :

## ՎԵՐՋԻՆ ԺԱՄ

ՓԱՐԻԶ ԵՒ ԼՈՆՏՈՆ որոշեցին Սուէզի շրջանը պարպել երեք շաբթէն : Զեկոյց մը պիտի հրատարակուի Բշ. օր :

ԸՆԿԵՐՎԱՐԱԿԱՆ Միջազգայինի ընդհ. խորհուրդին նիստը բացուեցաւ Քոփէնհակի մէջ : Օրակարգի գլխաւոր խնդիրներն են Ալժերիա եւ Միջին Արեւելք, որոնց մասին տարբեր տեսակէտներ ունին Ֆրանսայի եւ Անգլիոյ ընկերվարականները :

ՍՈՒՐԻԱ 390 հրասայլ, վեց հարիւր թնդանօթ, բազմաթիւ գնդացիրներ եւ ուրիշ զէնքեր ստացած է Խ. Միութենէն, ինչպէս յայտարարեց Բուշինկթընի Ֆրանսական դեսպանը, Պ. Ալֆան :

ՄԱՐՈՔ անտասկան տագնապի մը մատնուած է, ինչպէս կը հաղորդեն տեղական թերթերը : Պիտի սահմանափակեն ճերմակ հացին սպառումը եւ ուրիշ սեղմումներ պիտի հաստատեն :

ԳԼՈՒԽՆԵՐՈՎ իրարու միացած երկու աղջնակներ բաժնեց գերման վիրաբոյժ մը : Երախաներէն մէկը մեռաւ :

ՅՈՒՆԱՍՏԱՆ ազդարարեց թէ ցամաքային ջուրերու սահմանը վեց հազարէն 12·000ի պիտի բարձրացնէ, եթէ Թուրքիան այդպէս ընէ :

ՀԱՄԱՅՆԱՎԱՐ կեդր. Կոմիտէն խիստ ազդարարութիւն մը ուղղեց հռչակաւոր նկարիչին, Փիքասոյի եւ ուրիշ ինը մտաւորականներու, որոնք բացատրութիւն պահանջած էին Հունգարիոյ դէպքերու մասին :

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ.—

Նիկոլ Դումանի ենթկ. կիրակի, 2 Դեկտ. ժամը 3·30ին :

Ակնունի ենթկ. Շաբաթ, 8 Դեկտ. ժամը 9ին :

Իշխան խումբը շաբաթ 8 Դեկտեմբեր, ժամը 9ին :

Ընկեր Կարօ ենթկ. Կիրակի 9 Դեկտեմբեր ժամը 3·30ին :

Արամ խումբը Կիրակի 9 Դեկտեմբեր, առաւօտեան ժամը 10ին :

Սոյն ժողովները տեղի կ'ունենան սովորական հաւաքատեղին : Կարեւոր օրակարգ : Ներկայ կ'ըլլայ Շրջ. Կ. ներկայացուցիչը :

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Քրիստափոր» խումբի ժողովը այս երեքշաբթի գիշեր, Քաֆէ Ռեժանի վերնայարկը :

### ՅԱՐԳԱՆՔԻ ԵՐԵԿՈՅ

Նուիրուած ՇԱՀԱՆ ՊԵՐՊԵՐԵԱՆի յիշատակին :

Նախաձեռնութեամբ «Անդաստան» գրական պարբերականի :

Այս երկուշաբթի երեկոյ ժամը 8·30ին, Միւթիւալիթէի Ժ. սրահին մէջ՝

Գեղարուեստական խնամուած բաժին :

Ծախքերու մասնակցութիւն :

### «ՅԱՌԱՋ» ԿԸ ՆՈՒԻՐԵՆ

Տիկին Տէրտէրեան (Ալժէ) մէկ տարեկան «Յառաջ» կը նուիրէ իր եղբօր՝ Տքթ. Սօմունճեանի (Յունաստան) :



### ՏՕՆԱԾԱՌ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանին Տօնածառի հանդէսը տեղի պիտի ունենայ Կիրակի, 23 Դեկտ. ժամը 15ին : Կը հրաւիրուին ծնողներն ու համակիրները :



### ՆՈՒԷՆՆԵՐ

«Յառաջ»ի բաժանորդներէն ոմն իր զաւկին ապաքինութեանը վերադարձին առթիւ 500 ֆր. կը նուիրէ Ֆ. Կ. Խաչի Փարիզի մասնաճիւղին, 500 ֆր. Մշակոյթի Տան եւ 500 ֆր. «Յառաջ»ի բարգաւաճման :

Ստանալ «Յառաջ»էն :

### ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը այս չորեքշաբթի գիշեր, ժամը 9ին, Քաֆէ Քաւէի վերնայարկը : Վիճաբանական նիւթ. —«Կղերը պէ՞տք է որ վարէ սփիւռքի հայութեան ճակատագիրը» : Փր խնդրուի ճշգապահ ըլլալ :

### Ֆ. ԿԱՊ. ԽԱՉ

Տէր եւ Տիկ. Խորէն Գրիգորեան հազար ֆր. կը նուիրեն Ֆ. Կ. Խաչի օդափոխութեան կայանին, ի յիշատակ Տիկին Թագուհի Բալուեանի :

Imp. Araxes - 46, rue Richer. Paris (9e)

### «ՅԱՌԱՋ»Ի ԲԱՐԳԱՒԱՃՄԱՆ ՀԱՄԱՐ

★

Շնորհակալութեամբ ստացանք Պ. Ժ. Պաքէեանէ հազար ֆրանք, իր խմբագրատուն այցելութեան առթիւ :

Օր. ՄԱՐԳՐԻՏ ԽՐԻՄԵԱՆ
(Նոր Սերունդ, Սէնթ Էթիէն)
ԱՒԵՏԻՍ ՔՂԵԼԵԱՆ
(Նոր Սերունդ, Վիէն)
Ամուսնացած
Կնքահայրութեամբ Տէր եւ Տիկին Գ. Զարդարեանի : 17 Նոյ. 1956

եւ Քանատայի արտաքին նախարարնե-րուն տեղեկագիրը) ։

Շաբաթը պիտի վերջանայ միացեալ Եւրոպայի Խորհուրդին գումարումով ։ Օրակարգին վրայ կը գտնուին նաեւ, Հունգարական հարցը եւ հազարաւոր փախստականներու խնդիրը ։

× Մ. Նահանգներու փոխ-նախագահը, Նիքսըն ճառ մը խօսելով, յայտարարեց թէ «Մ. Նահանգները պէտք է օգնեն Անգլիոյ եւ Ֆրանսայի, որպէսզի կարենան յաղթել Սուէզի տագնապէն ծագած դժուարութեանց ։ Ես համոզուած եմ թէ զօրաւոր հոսանք մը պիտի կազմուի խորհրդարանին մէջ, ի նպաստ այս օգնութեան ։ Անշուշտ Ֆրանսա եւ Անգլիա սխալներ գործեցին ։ Այժմ ժամանակն է որ ըմբռնենք թէ մեղադրանքները եւ պատասխանատուութեանց ճշդումը բանի մը չեն ծառայեր ։ Ազատութեան դատին համար չկայ աւելի մեծ աղէտ մը քան թոյլ տալ որ որեւէ միջադէպ փոս մը բանայ մեր դաշնակիցներուն եւ մեր միջեւ » ։

Փոխ-նախագահը Հունգարիոյ դէպքերու մասին ալ խօսելով, ըսաւ թէ անոնք կը ծանուցանեն «Համայնավարութեան պարտութիւնը առանց պատերազմի ։ Ռուսերը բռնանալով Հունգարիոյ վրայ միեւնոյն ատեն կորսնցուցին պատերազմը համաշխարհային տիրապետութեան համար զոր կը փորձէին շահիլ յուսահատօրէն » ։

Միջին Արեւելքի դէպքերուն առթիւ, Նիքսըն կը կարծէ որ եթէ Մ. Նահանգները տարբեր քաղաքականութեան մը հետեւած ըլլային, անկարողութեան պիտի դատապարտէին Ազգաժողովը ։ «Մեր ֆրանսացի եւ անգլիացի դաշնակիցները կրնային զինուորական յաղթանակ մը շահիլ, բայց այն ատեն պիտի կորսնցնէինք բովանդակ աշխարհի բարոյական աջակցութիւնը » ։

Մ. Նահանգներու գանձային նախարարութիւնը կը ծանուցանէ թէ մէկ միլիառ տոլարի վարկ մը պիտի բանայ, մասամբ օգնելու համար Մեծն Բրիտանիոյ, որ ծանր տագնապի մը մատնուած է ելմտական եւ տնտեսական տեսակէտով ։

### ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԿԻՊՐՈՍԻ զինուորական իշխանութիւնը կը ծանուցանէ թէ ձերբակալուած են յեղափոխական կոմիտէին անդամներէն տասը հոգի ։

ՅՈՒՆԱՍՏԱՆԻ վարչապետը եւ արտաքին նախարարը, որոնք Պելկրատ գացած էին քաղաքական խորհրդակցութեանց համար, Աթէնք վերադարձան մեծ գոհունակութեամբ ։ Երկու երկիրները որոշած են միասնաբար գործել, ներկայ կացութեան մէջ ։

ՀՈՒՆԳԱՐԻՈՅ կրօնապետին՝ կարդինալ Մինծենթիի յուշերը սկսան հրատարակել ամերիկեան թերթերը ։ Կարդինալը կը պատմէ թէ չարաչար տանջած են 29 գիշեր եւ ցերեկ, խոստովանութիւններ կորզելու համար ։

ԱՆԾԱՆՕԹՆԵՐ մէկ օրուան մէջ 32 միլիոն Ֆրանք թռցուցին Նիսի կեդրոնական նամակատունէն, 14 միլիոն՝ Իվրիի (Փարիզ) մէկ գործարանէն, 2.800.000 ֆրանք մեծ դոհարավաճառէ մը, 800.000 ֆրանք ալ գանձապահէ մը, Վիլնէօվ Լա Կառէնի մէջ (Փարիզ) ։

Խ. ՄԻՈՒԹԵԱՆ սպայակոյտին պետը, մարէշալ Սոքոլովսքի, յօդուած մը հրատարակելով, կ'ըսէ թէ Ֆրանսա, Անգլիա եւ Մ. Նահանգները Գ. աշխարհամարտ մը կը պատրաստեն, պղտորելով միջազգային մթնոլորտը ։

ԼԵՀԱՍՏԱՆԻ Գերագոյն Ատեանը կատարելապէս վերահաստատեց նախկին նախարար Լիկովիցի բոլոր իրաւունքները ։ Ամբաստանեալը 15 տարի բանտարկութեան դատապարտուած էր 1948ին ։

ԻՏԱԼԻԱ արգիլեց Մոսկուայի Կեդր. Կոմիտէի անդամներէն Սուսլովի մուտքը ։

40 ԸՄԲՌՍՏՆԵՐ սպաննուեցան արեւմտեան Ալժերիոյ մէջ ։

ԱՆԳԼԻՈՅ պահլիճը վստահութեան քուէ շահեցաւ 260ի դէմ 312 ձայնով ։ Երեսփ. ժողովը միեւնոյն ատեն 260ի դէմ 327 ձայնով մերժեց ընդդիմադիրներուն առաջարկած պարսաւանքի բանաձեւը ։ Իտըն Լոնտոն պիտի վերադառնայ Դեկտ. 14ին ։ Ելմտական եւ տնտեսական տագնապը մեծ մտահոգութիւն կը պատճառէ կառավարութեան ։

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ.—
Վարանդեան խումբը այս երկուշաբթի ժամը 9ին ։
Համազասպ խումբը, չարաթ, 15 Դեկտ. ժամը 9ին ։
Մուրատ խումբը (Աւինեոն) 16 Դեկտ. Կիրակի, ժամը 3.30ին ։
Թաթուլ խումբը, երկուշաբթի, 17 Դեկտեմբեր, ժամը 9ին ։
Ժողովները տեղի կ'ունենան սովորական հաւաքատեղիներու մէջ ։

ԼԻՈՆ.— Ֆ. Կ. Խաչի մասնաճիւղը իր անդամուհիները ընդհ. ժողովի կը հրաւիրէ, այս չորեքշաբթի կէսօրէ վերջ ժամը 3ին, ընկերուհի Տիկին Պէրպէրեանի բնակարանը, 39 ռիւ Տինուար ։ Կարեւոր օրակարգ ։ Կը խնդրուի ճշդապահ ըլլալ ։

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը այս ուրբաթ, ժամը 21ին, Քաֆէ Ռեժանի վերյարկը ։
Դասախօս՝ Մ. ՊԱՐՍԱՄԵԱՆ
Նիւթը՝ Գիտուն պատմաբան Փառլ Ռօրպախ եւ Հայերը ։
Մուտքը ազատ է ։ Կը խնդրուի ճշդապահ ըլլալ ։

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը այս չորեքշաբթի գիշեր, Քաֆէ Քառէի վերնայարկը ։ Դասախօս՝ Պ. Արշաւիր Խանէտանեան ։ Նիւթը՝ «Արտաքին ազդեցութեանց թշնամութիւնը՝ մարդկային ընկերութեան հիմերուն» ։ Կը խնդրուի ճշդապահ ըլլալ ։

## ՆՈՒԷՐՆԵՐ

Տէր եւ Տիկին Լորիս Բաբանեան իրենց սիրելի մօր՝ Թագուհի Բալուեանի դառն կորուստին առթիւ, հազարական ֆրանք կը նուիրեն Կապոյտ Խաչի կայանի չէնքին, «Հայաստան» ամսաթերթին, «Համազգային»ի, Որբախնամին եւ «Յառաջ»ի բարգաւաճման համար ։
Ստանալ «Յառաջ»էն ։

## ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

ՍԱՄՈՒԷԼ - ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ տօնածառին հանդէսի թուականը ծնողներու փափաքին վրայ նշանակուած է Դեկտ. 16ին (փոխան 23ի) ժամը 4ին ։
Կը ներկայացուի՝
«ՋԱՐՇԸԼԸ ԱՐԹԻՆ ԱՂԱ»
Արտասանութիւն, երգեր, խաղեր եւ մանկական պարեր ։
26, Rue Troyon, Métro : Pont de Sèvres.

### « ՀԱՅԵՐԸ ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ »

Պ. Ժ. Կարանեոնի այս Ֆրանսերէն գրքոյկէն սակաւաթիւ օրինակներ կը մնան տակաւին ։ Գինը՝ 160 ֆրանք, թղթատարի ծախքով ։ Դիմել.—
J. Pierre Garagnon, 34 Rue du 4 Septembre
Valence (Drôme)

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Ֆ. Կ. Խաչի Մարսէյլի մասնաճիւղը Մանուկներու Օրը կը տօնէ Յունուար 6ին, Ահարոնեան ակումբին մէջ ։



Imp. Araxes - 46, rue Richer, Paris (9e)

### ՅԵՏԱՁԳՈՒԱԾ Է

## ԸՆԿԵՐԱԿԱՆ ԽՆՋՈՅՔԸ

ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐՈՒԱՆ ԱՌԹԻ

Որ տեղի պիտի ունենար այս կիրակի, Առնուվիլի մէջ ։

### ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

ՄԱՐՍԷՅԼ.— Համազգայինի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է Տէր եւ Տիկին Վարդան Փափազեանէ երկու հազար ֆրանք, փոխան ծաղկեպսակի, ողբացեալ Բենիամին Միլտոնեանի մահուան առթիւ ։

գործումներու :

Փարիզ հասած տեղեկութեանց համաձայն, լուրջ խլրտումներ տեղի ունեցած են Մոսկուայի Քալանովիչ եւ Լենինկրատի Պուտիլով գործարաններուն մէջ, գործադուլի սպառնալիքով: Մոսկուայի համալսարանին մէջ ցոյցեր կատարուած են Խրուշչեւի դէմ: Անկարգութիւններ ծագած են նաեւ Ուրալի շրջանին եւ Դոնի աւազանին, ինչպէս եւ Մոսկուայի կօշիկի գործարանին մէջ :

Այս առթիւ հետեւեալ նոր տեղեկութիւնները կը հաղորդէն դիւանագիտական աղբիւրէ . —

Արեւելեան Գերմանիան (բոլշեւիկ) հետզհետէ կը խստացնէ իր ապահովութեան միջոցները, կանխելու համար որ եւ է ցոյց Խ. Միութեան դէմ :

Ցարաճուն խլրտումներ տեղի կ'ունենան պալթեան երկիրներուն մէջ : Կ'ըսուի թէ Մոսկուա լուծած է Էսթոնիոյ փոքր բանակը, վախնալով որ ապստամբութիւն մը կը սարքեն, ինչպէս եղաւ Հունգարիոյ մէջ: Էսթոնիոյ աքսորական նախագահը, Օկիւսթեէյ այս լուրերը հաղորդելով կ'ըսէ թէ Ռուսերը ծրագրած են հարիւր հազար Էսթոնիացիներ, Լաթվիացիներ եւ Լիթուանացիներ աքսորել դէպի արեւելք (Սիպերիա եւն.), «հողագործական աշխատանքներու համար»: Նախագահին յայտարարութեան համաձայն Ռուսերը «բոլորովին կորսնցուցած են պալթեան երկիրներու երիտասարդութիւնը: Ուսանողները կը մերժեն ռուսական դասախօսութիւնները եւ ազգային զգացումները հետզհետէ կը զօրանան »:

Ուշագրաւ է որ Մոսկուա կանչուած են արբանեակ երկիրներու բոլոր խորհրդային դեսպանները, Կեդր. Կոմիտէի ժողովին առթիւ :

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՏՕՆԱԿԱՆ օրերու առթիւ աւանդական ընդունելութիւնը տեղի ունեցաւ Ելիզէի պալատին մէջ, սովորականէն կանուխ : Ի դիմաց դեսպանական մարմնին խօսեցաւ պապական նուիրակը, գերապայծառ Մարելլա, մաղթելով որ «գալիք տարին նուազ խռովայոյզ ըլլայ»: Հանրապետութեան նախագահն ալ մաղթանքներ ուղղելով ըսաւ. — «Ֆրանսան ապակիէ տուն մըն է, ծածկելիք բան չունի »:

ՀՆԴԿԱՍՏԱՆԻ վարչապետը, Նեհրու, շարք մը ճառեր խօսեցաւ Նիւ Եորքի մէջ: Թելադրեց ազգերը ազատել փոխադարձ երկիւղէն : Յետոյ շնորհաւորեց Ազգաժողովը եւ պատուիրակները «որոնք ըստանձնած են բովանդակ աշխարհի պատասխանատուութեան ծանրութիւնը եւ կրցան արխաբար քննել զանազան հարցեր վերջին շաբաթներու ընթացքին : Ըսաւ թէ անընական է որ օտար զինուորներ գտնուին ուրիշ ազգի մը հողին վրայ:

ՀՈՒՆԳԱՐԻՈՅ զինուորական ատեանները ցարդ 21 մահավճիռ արձակած են, համաձայն ռատիօ Փեշթայի զեկուցման: — Հանքագործները վերջնագիր մը ուղղեցին կառավարութեան, պահանջելով վարչապետ Քատարի հրաժարումը, խորհրդային զօրքին հեռացումը եւ ազատ ընտրութիւններ : — Կառավարութիւնը արձակեց սենտիքաներու վարիչը, Շանտոր Պալի, սակայն ձերբակալութիւնները կը շարունակուին գաւառի մէջ : Կառավարութիւնը միշտ ընդդիմութեան կը հանդիպի, զանազան ծրագիրներ գործադրելու համար :

ՄԱՌԵՇԱԼ ԹԻԹՕ Ռուշինկթըն հրաւիրուեցաւ պաշտօնապէս : Այցելութեան թուականը ճշդուած չէ տակաւին :

ՍՈՒՐԻՈՅ կառավարութիւնը մերժեց Մ. Նահանգներուն առաջարկը՝ քանդուած նաւթագծին նորոգման մասին :

500 ՄԻԼԻՈՆ ՏՈԼԱՐԻ վարկ մը պիտի տրամադրուի Անգլիոյ, Արտածում - Ներածում Դրամատան կողմէ, քարիւղ գնելու համար Մ. Նահանգներուն մէջ :

ԿԻՊՐՈՍԻ Ֆամակուսթա նաւահանգստին մէջ ընդհ. գործադուլ մը սարքուեցաւ, իբրեւ բողոք նոր սահմանադրութեան դէմ: Բոլոր խանութները եւ զբօսնենակները փակուեցան: Նաւահանգստի աշխատաւորներն ալ դադրեցուցին ամէն աշխատանք:— Նիկոսիոյ մէջ սպաննուեցաւ անգլիացի ոստիկան մը: Վեց եպիսկոպոսներ Մակարիոս արք.ի աքսորավայրը պիտի երթան, նոր սահմանադրութեան մասին խորհրդակցելու համար :

ԳԵՐՄԱՆԻՈՅ խորհրդարանը վերջնապէս վաւերացուց Սարի մասին կնքուած դաշնագիրը: Շրջանը Գերմանիոյ պիտի կցուի յառաջիկայ Յունուարին :



## ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ

Տարեկան ցերեկոյթ-պարահանդէսը
կիրակի, 3 փետրուար, ժամը 16-24
LES AMBASSADEURS
Champs-Elysées, 3, Avenue Gabriel
Սեղաններդ կանխաւ ապահովել
ELYSEE 67-03

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ցաւակցութիւն կը յայտնէ ընկ. Յակոբ Հացագործեանի եւ ընտանեկան պարագաներուն, Տիկին Ե. Հացագործեանի կսկծալի մահուան առթիւ:

●

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Սէն Լուի Ակնունի ենթակոմիտէն իր խորին ցաւակցութիւնը կը յայտնէ ընկեր Գրիգոր Մուրատեանի դառնադէտ մահուան առթիւ իր կնոջ, զաւակներուն եւ իր բոլոր պարագաներուն: Նոյն առթիւ ցաւակցութիւն կը յայտնեն Ֆր. Կ. Խաչի եւ Նոր Սերունդի մասնաճիւղերը:

Նոյնպէս ցաւակցութիւն կը յայտնեն ընկեր Սարգիս Դանիէլեանի եւ իր պարագաներուն, իրենց սիրելի մօր՝ Տիկին Մարիամ անիէլեանի դառնադէտ մահուան առթիւ որ տեղի ունեցաւ Ամերիկայի մէջ :

## ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ

Պոմոնի Ս.Գ. Լուս. եկեղեցւոյ արարողութեանց

Այս երեքշաբթի, Սրբոյն Ստեփանոսի նախասարկաւագին :

Սկիզբ առաւօտեան ժամերգութեանց, ժամը 8: Հանդիսաւոր Սուրբ պատարագ ժամը 10ին: Տօնախմբութիւն Սարկաւագաց եւ Դպրաց : (աՇր.)

## ԾԱԽՈՒ ԲՆԱԿԱՐԱՆ

Ծախու են երկու բնակարաններ Ալֆորվիլի մէջ: Մէկը ունի երկու սենեակ եւ խոհանոց, միւսը՝ երեք սենեակ խոհանոց: Վճարման դիւրութիւն:

Դիմել՝ 24 ռիւ տիւ Մարշէ, Ալֆորվիլ:



## ԳԵՂԵՑԻԿ ԿԱՂԱՆԴՉԷՔ ՄԸ

Որբերու Օգնութեան Մարմինը (Փարիզահայ Տիկնանց Միութիւն) հրապարակ հանած է ընտիր մոխրաման մը Անիի Մայր Տաճարին նկարով,— գեղեցիկ կաղանդչէք մը ձեր ազգականներուն եւ բարեկամներուն:

Հաւատ մը գնելով թէ հաճոյք պատճառած եւ թէ օգնած կ'ըլլաք հայ որբերուն:

Ստանալու համար դիմել Մ. Պարսամեան գրատունը, 46 ռիւ Ռիշէ :

Գինը՝ 500 ֆրանք :

EUROPE No. 1
1647 m. G. O.
ANNE-MARIE

այս երկուշաբթի ալ պիտի ներկայացնէ հայերէն երգայնակ մը, ժամը ճիշդ 11ին:

## ՊԱՏԱՐԱԳ ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Այս Երեքշաբթի առաւօտ Ծննդեան տօնին առթիւ Ս. պատարագ պիտի մատուցուի Ռիւ Քէ, Սէն Լուի սրահին մէջ :

Պիտի պատարագէ Թորգոմ քահանայ, (Լիոնէն):

## ՍՏԱՑԱՆՔ

ԿԵԱՆՔԸ ՀԻՆ ՀՌՈՎՄԷԱԿԱՆ ՃԱՆԱՊԱՐՀԻ ՎՐԱՅ (վէպ): Գրեց՝ Վահան Թոթովենց: Հրատ. Խոյեան Թիւ 27: Գին՝ 1,25 տոլար: Հասցէ.—

B. P. 3261, Beyrouth (Liban).

ՅԱՒԻՏԵՆԱԿԱՆ ՈՒՂԻՆԵՐ (քերթուածներ, 1950-1956): Գրեց՝ Մատի Աթմաճեան: Փարիզ, 1956: Գին 500 ֆրանք:

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

Ֆ. Կ. ԽԱՉԻ Շրջ. վարչութիւնը Փարիզի շրջանի ընկերուհիները միջմասնաճիւղային ժողովի կը հրաւիրէ այս հինգշաբթի ժամը 17ին, Ռեժան սրճարանի վերնայարկը : Մանուկներու Օրուան կարգադրութիւններու համար :

NOEL SUR LA PLANETE

Այս երկուշաբթի իրիկուն ժամը 22,15ին Փարի - Էնթերի վրայ չմոռնաք ունկնդրել ԼԻՏԻԱ ԿԱՐԻՆԻ պատրաստած էմիսիոնը:

*Imp. Araxes - 46, rue Richer, Paris (9e)*

միա մարդարէներու կրնայ հանդուրժել: Հայ եկեղեցականութիւնը կը գտնուի փորձաքարի մը առջեւ, իր առած վճիռով իր բարոյական բարձրութիւնը յայտնած կ'ըլլայ: Կրնանք անվարան յայտարարել թէ Երուսաղէմի Հայութեան համար անարժան եւ ապիկար եկեղեցականներու ներկայութիւնը այլեւս անհանդուրժելի է վանքէն ներս. այս որոշումին վրայ հաստատ կը մնայ ամբողջ գաղութը առանց կուսակցական խտրութեան եւ հատուածական հաշիւներու: Գաղութը չուզեր եղիշէ արք. Տէրտէրեանը եկեղեցական ճանչնալ. իր կենցաղը օտարներուն ալ ծանօթ ըլլալով մեր ժողովուրդին արժանապատուութիւնը կը վիրաւորէ:

Վերջին խօսքը Ամենայն Հայոց Կաթողիկոսին կ'իյնայ:

ԹՂԹԱԿԻՑ

ԽՄԲ.— Ուրիշ տեղեկութիւններ ալ՝ յաջորդով (քաղուած Ամենայն Հայոց Կաթողիկոսի նամակէն):

պետութեան), որ վերջերս Իսրայէլ այցելած էր, ուսումնասիրութիւն մը հրատարակելով, կ'ըսէ թէ «արեւմտեան Եւրոպայի շահը կը պահանջէ զօրացնել Իսրայէլը»:

## ԿԱՑՈՒԹԻՒՆԸ ՀՈՒՆԳԱՐԻՈՅ ՄԷՋ

Վերջին լուրերու համաձայն յուսահատական աստիճանի մը հասած է Հունգարիոյ տնտեսական տագնապը: Ծնունդի նօրեայ արձակուրդէն ետք բանուորները վերսկսած են աշխատանքը, բայց արտադրութիւնը կը կաղայ, հում նիւթերու նուազման հետեւանքով: Մեծ հաստատութեան մը՝ Ցեփելի 38.000 բանուորներէն միայն չորս հազարը լման աշխատավարձ կը ստանան, 17.000ը կէս. մնացեալները անգործ են: Կացութիւնը այնքան ծանրացած է որ կառավարութիւնը ելքեր կը փնտռէ արտաքին փոխառութիւն մը կնքելու համար: Առ նուազն 400.000 տոլարի կը կարօտի տնտեսական վերակազմութիւնը: Կառավարութիւնը շատ յոյս չունի որ Խ. Միութիւնը եւ արբանեակ երկիրները կարենան օգնել:

Խորհրդային հրասայլերը շատ չեն երեւար Փեշթայի մէջ, բայց խորհրդարանը պաշարուած է տակաւին: Քատարի կառավարութիւնը կը մտածէ ընդլայնել դահլիճին կազմը, ժողովրդականութիւն շահելու համար:

× Վիէննայէն կը հեռագրեն թէ հունգարական կառավարութիւնը ածխահանքերը կը ղրկէ գիւղացիները, «ազգային աղէտի մը առաջքը առնելու համար»: Կառավարութիւնը կը խոստովանի թէ սովորականէն տասը միլիոն թոն պակաս պիտի ըլլայ հանքածուխի արտադրութիւնը:

× Մոսկուայի կուսակցական պաշտօնաթերթը, Փրաւտա, կը գրէ թէ Թիթօ պիտի չտան որ փաշական պետութիւն մը կազմուի Պալքաններու մէջ, Հունգարիան դարձնելով հնոց նոր պատերազմի մը»:

ՄՈՍԿՈՒԱՅԻ կուսակցական պաշտօնաթերթը կը գրէ թէ նոր տեղեկագրի մը համաձայն ծանր թերացումներ երեւան հանուած են ուսանողներու դաստիարակութեան մէջ: Ուսանողները կը գանգատին իրենց կեանքի պայմաններէն, սնունդէն եւայլն:

ՎԱՐՇԱՎԻ ԱՐՁԱԿՈՒՐԴԻ առթիւ կարելի՞ է 30 % զեղչով երկրորդ տոմսակ մը տալ այն բանուորներուն որոնք երկու անգամէն կը կատարեն իրենց արձակուրդը: Խնդիրը կը քննուի:

### ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՊԱՏԱՐԱԳ

Այս կիրակի առաւօտ ժամը 10ին Փարիզի Ս. Յովհաննէս-Մկրտիչ եկեղեցիին մէջ պիտի մատուցուի քառաձայն պատարագ ղեկավարութեամբ Պ. Ա. Պարթեւեանի:

Պատարագէն վերջ ի պատիւ գպրաց դասուն, ընդունելութիւն նախագահութեամբ Հայրապետական Պատուիրակ եւ Փարիզի առաջնորդ Սերովբէ եպս. Մանուկեանի:

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Պ. Սիմոն Օհանեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս կիրակի առաւօտ Փարիզի Ս. Յովհաննէս-Մկրտիչ եկեղեցին իրենց կնոջ եւ մօր՝

ԱՂԱՒՆԻ ՕՀԱՆԵԱՆԻ

մահուան 5րդ տարեդարձին առթիւ:

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները:

Մխիթարեան Միաբանութիւնը ցաւով կը ծանուցանէ ՀԱՅՐ ՍԱՀԱԿ ՎԱՐԴԱՊԵՏ ՏԷՐ ՄՈՎՍԷՍԵԱՆԻ յանկարծական մահը որ տեղի ունեցած է դեկտեմբեր 25ին, Վենետիկի մէջ:

Յուղարկաւորութիւն եւ թաղումը կատարուած են հինգշաբթի օր, Ս. Ղազարի վանքին մէջ:

### ԳԵՂԵՑԻԿ ԿԱՂԱՆԴՉԷՔ ՄԸ

Որբերու Օգնութեան Մարմինը (Փարիզահայ Տիկնանց Միութիւն) հրապարակ հանած է ընտիր մոխրաման մը Անիի Մայր Տաճարին նկարով,— գեղեցիկ կաղանդչէք մը ձեր ազգականներուն եւ բարեկամներուն:

Հատ մը գնելով թէ հաճոյք պատճառած եւ թէ օգնած կ'ըլլաք հայ որբերուն:

Ստանալու համար դիմել Մ. Պարսամեան գրատունը, 46 ռիւ Ռիշէ:

Գինը՝ 500 փրանք:

### ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Ֆ. Կ. Խաչի Մարսէյլի մասնաճիւղը Մանուկներու Օրը կը տօնէ Յունուար 13ին, կիրակի, Քաֆէ Նօայի սրահին մէջ, կէսօրէն ետքը:

***

ՇԱՒԻԼ.— Փարիզի «Մանուկներու Օր»ուան հանդէսին առթիւ, որ տեղի կ'ունենայ Յունուար 3ին, հինգշաբթի օր Սուսէթէ Սավանթի սրահը, Ֆ. Կ. Խաչի Շաւիլի մասնաճիւղը վարձած է օթոքար մը: Գիւղին մանուկները, դպրոցական ըլլան թէ ոչ, ձրի պիտի փոխադրուին հանդիսավայրը, իսկ մանուկներուն ընկերացող մեծերէն պիտի գանձուի 200 փրանք: Օթոքարը ժամը ճիշտ 2ին պիտի մեկնի Փուան տը Շաւիլէն եւ պիտի կենայ Շաւիլի հանրակառքի բոլոր կայարանները եթէ սպասողներ գտնուին: Կը խնդրուի ծնողներէ որ իրենց զաւակները չզրկեն այս բացառիկ պատեհութենէն:





Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴ

ԸՆԴՀ. ԺՈՂՈՎ — ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Փարիզի շրջանի բոլոր մասնաճիւղերը ընդհ. ժողովի կը հրաւիրուին կիրակի 30 դեկտ. կէսօրէ ետք ժամը 3ին, Ազգ. Տան մէջ:

Ժամը 6էն ետք խրախճանք եւ պարահանդէս:

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Տէր եւ Տիկին Ղազարոս Քէշիշեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ այս կիրակի հոգեհանգիստ եւ պատարագ պիտի մատուցուի իրենց հօր՝ Միսաքի, մօր՝ Մարիամի եւ եղբօր՝ Պօղոսի, նաեւ նոր հանգուցեալ իրենց փեսին՝ Փայլակ Մատալեանի քառասունքին առթիւ, Պուլվար Օտոյի Ս. Յակոբ եկեղեցւոյն մէջ: Ողբացեալին յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ ըլլալ:

### ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԼՍԱՐԱՆԸ ՌՕՆԻ ՍՈՒ ՊՈՒԱՅԻ ՄԷՋ

Համազգային լսարանին վերջին դասախօսութիւնը պիտի կրկնուի Ռօնի-Սու-Պուայի մէջ, այս շաբաթ գիշեր, ժամը 21ին, Քաֆէ տիւ Քոմէրսի մէջ:

Դասախօս՝ Մ. ՊԱՐՍԱՄԵԱՆ: Նիւթը՝ Գիտուն Փառլ Ռորպախ եւ Հայերը:

Կը հրաւիրուին շրջանին մեր հայրե-

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՇԱՒԻԼ.— Եկեղեցաշէն երիտասարդներու վարչութիւնը ժողովի կը հրաւիրէ բոլոր երիտասարդները եւ երիտասարդուհիները այս շաբաթ իրիկուն (29 դեկտ.) ժամը 9ին, դպրոցին սրահը:

ՀԱՄԱՍԽԱՐՀԵՐԴ միութեան Լիոնի մասնաճիւղի անդամական ժողովը այս շաբաթ սովորական հաւաքատեղին: Բոլոր անդամներուն ներկայութիւնը անհրաժեշտ է:

### ՊԱՏԱՐԱԳ ԱԼՖՈՐՎԻԼԻ ՄԷՋ

Ալֆորվիլի Ս. Պօղոս-Պետրոս եկեղեցւոյ հոգաբարձութիւնը կը ծանուցանէ թէ այս կիրակի եկեղեցւոյ անուանակոչութեան տօնին առթիւ հանդիսաւոր պատարագ պիտի մատուցուի: Պատարագը պիտի երգեն խաչակիր մանուկները, ղեկավարութեամբ Տօքթ. Լ. Համբար-ձումեանի եւ մասնակցութեամբ Օր. Ժ. Տիրատուրեանի եւ Պ. Քիսիքեանի:

Այս առթիւ նաեւ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի եկեղեցւոյն բարերար Պ. Արմենակ Համբարձումեանի ննջեցելոց համար:

*Imp. Araxes - 46, rue Richer. Paris (9e)*

